Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 12 ՀՈՒՆԻՍ 1959

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, 11 հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78


# ԿՅԱՆՔԻ ՀԵՏ ՍԵՐՏՈՐԵՆ ԿԱՊՎԱԾ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԱՄԱՐ

Կոմունիստական ծավալուն շինարարության ծրագիրը, որը մարմնավորված է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի մեջ, յուրաքանչյուր ագիտատորից պահանջում է քաղաքական ագիտացիայի հետագա ուժեղացում։ Եվ դա հասկանալի է, որովհետև կոմունիզմի կառուցումը սերտորեն կապված է բոլոր քաղաքացիների կոմունիստական գիտակցության անընդհատ բարձրացման հետ, բոլոր աշխատավորներին և հատկապես երիտասարդությանը կոմունիստական բարոյականության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու խնդրի լուծման հետ։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի վեցերորդ պլենումը ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների լույսի տակ վերջերս քննության առավ ռեսպուբլիկայի աշխատավորների շրջանում մասսայական-քաղաքական

աշխատանքները ուժեղացնելու միջոցառումների հարցը։ Պլենումը հանրագումարի բերելով ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների կողմից կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքը, միաժամանակ իր որոշման մեջ խնդիր դրեց այդ աշխատանքը ամեն կերպ բարելավելու, նրա ձևերն ու մեթոդները կատարելագործելու ուղղությամբ։

Մեր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններին կից ագիտկոլեկտիվները, որոնց մեջ ընդգրկված են ավելի քան 30 հազար ագիտատոր, լայնորեն ծավալել են ՍՄԿՊ XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման, համագումարի որոշումների ու նյութերի պրոպագանդումն ու պարզաբանումը։ Համագումարի որոշումների պրոպագանդման, քաղաքական-մասսայական աշխատանքի հետագա ծավալման գործում մեծ խթան հանդիսացավ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը «Ստալինյան մարզի աշխատավորների շրջանում կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակի և նրա բարելավման միջոցառումների մասին», որը մասսաների կոմունիստական դաստիարակության, նրանց գաղափարական մակարդակի բարձրացման



նկատմամբ մեր պարտիայի անդուլ հոգատարության մի նոր օրինակ է։

Անշեղորեն կատարելով պարտիայի պահանջները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները ագիտատորների բանավոր խոսքի միջոցով աշխատավորներին են հասցնում Կոմունիստական պարտիայի ճշմարտացի խոսքը, պարզաբանում մեր պետության ներքին և արտաքին քաղաքականության հարցերը, մոբիլիզացնում են աշխատավորներին յոթնամյակի խնդիրները ժամկետից շուտ կատարելու համար։

Ռեսպուբլիկայի շատ պարտիական կազմակերպություններ զգալի գործ են կատարել մասսայական-քաղաքական աշխատանքի վերակառուցման, նրա բովանդակության բարելավման, այն կյանքի հետ սերտորեն կապելու ուղղությամբ։ Այդ աշխատանքը նպաստում է, որպեսզի բանվորները, կոլտնտեսականներն ու ինտելիգենցիան խոր կերպով ըմբռնեն կոմունիստական շինարարության նոր խնդիրները, որ երկրի առջև դրել է ՍՄԿՊ XXI համագումարը։ Դա իր վառ արտացոլումն է գտել համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, այն պայքարի մեջ, որ աշխատավորները մղում

են կոմունիստական աշխատանքի բրիգադների կոչման համար։ Չնայած շատ կարճ ժամանակ է անցել այն օրվանից, երբ ծավալվեց «Կոմունիստական աշխատանքի բրիգադի» պատվավոր կոչում ստանալու շարժումը, մեր ռեսպուբլիկայում արդեն այդ շարժման մեջ են ընդգրկվել ավելի քան 700 առաջավոր, իսկ 17 բրիգադա արդեն արժանացել են այդ կոչմանը։

Մեր ագիտատորներն իրենց լուման ունեն ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջին եռամսյակի պլանի հաջող կատարման գործում։ Շատ ձեռնարկություններ պարտավորվել են ժամկետից շուտ կատարել կիսամյա արտադրական առաջադրանքը՝ ի պատիվ ՍՄԿՊ Կենտկոմի հերթական պլենումի հրավիրման։ Գյուղատնտեսության աշխատավորները հաջողությամբ կատարելով գարնանացանը, դնում են այս տարվա բարձր բերքի հիմքը։ Երևանի, Լենինականի, Կիրովականի, Գորիսի, Վեդու, Էջմիածնի և ռեսպուբլիկայի մի շարք այլ քաղաքների ու շրջանների պարտիական կազմակերպությունների աշխատավորների մեջ մասսայական-քաղաքական աշխատանքը կազմակերպելու դրական փորձ են կուտակել, սկսել են ավելի լայնորեն կիրառել աշխատանքի



բազմազան ձևեր ու մեթոդներ՝ աշխատավորների ժողովներ, բանավոր ամսագրեր, հարց ու պատասխանի երեկոներ և այլն։ Այս տարի մի շարք տեղերում տարածում են գտել մասսայական-քաղաքական աշխատանքի մի նոր ձև՝ կուլտուրայի համալսարանները։

Աշխատանքի դրական փորձ են կուտակել Լենինականում մշտական գործող ագիտկետերը, որոնք կազմակերպվել են պարտիայի Լենինականի քաղկոմի նախաձեռնությամբ։ Այժմ Լենինական քաղաքում արդեն գործում են 12 այդպիսի ագիտկետեր։

Առանձնապես լավ են աշխատում Տեքստիլ կոմբինատի և երկաթուղու Սկյանի անվան կուլտուրայի տների ագիտկետերը։ Օրինակ՝ Տեքստիլ կոմբինատի կուլտուրայի տան ագիտկետը, որը սպասարկում է կոմբինատի շրջակայքում ապրող բնակչությանը, հաջող կերպով է կազմակերպում ու անցկացնում նախապես պլանավորված քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցառումները։ Ագիտատորները հաճախակի լինում են աշխատավորների բնակարաններում, զրուցում նրանց ընտանիքի անդամների հետ, հաշվի առնելով բնակչության պահանջները քաղաքական-մասսայական

ու կուլտուրական սպասարկման վերաբեր-
յալ։ Ագիտատորները միաժամանակ բնակ-
չությանը տեղյակ են պահում ագիտկետում
կազմակերպվելիք միջոցառումների մասին,
տարածում նրանց մեջ հրավիրատոմսեր
կատարվող աշխատանքներին մասնակցու-
թյուն ունենալու համար։ Ագիտկետում, որ-
պես կարգ ամեն երկուշաբթի կազմակերպ-
վում է որևէ հետաքրքիր դասախոսու-
թյուն քաղաքական կամ գիտա-հանրամատ-
չելի թեմայով, հարց ու պատասխանի երե-
կո և այլն։ Հատկանշական է, որ յուրա-
քանչյուր այդպիսի միջոցառման ընթաց-
քում կազմակերպվում է գեղարվեստական
ինքնագործ խմբակների ելույթ, ցուցադրվում
է դոկումենտալ կամ գիտա-հանրամատչելի
կինոֆիլմ։ Նման միջոցառումները բովան-
դակալից են լինում և ընդգրկում են մեծ
թվով աշխատավորների։

Սևյանի կուլտուրայի տան ագիտկետը,
որը սպասարկում է երկաթուղայինների ըն-
տանիքներին, կիրառում է ագիտացիոն-
մասսայական ու կուլտուրական աշխատան-
քի բազմաթիվ ձևեր ու մեթոդներ։ Այդ թվում
արտադրության առաջավորների, աշխա-
տանքի վետերանների մեծարման, ռացիո-
նալիզատորների և երիտասարդական երե-



կոներ, էքսկուրսիաներ։ Այստեղ բնորոշ է
նաև աշխատավորների տեղական Սովետի
դեպուտատների հանդիպումները իրենց
ընտրողների հետ, ինչպես նաև ագիտկե-
տում թոշակառուներին ներգրավելը։ Ագիտ-
կետում անցկացվող միջոցառումներն ավե-
լի հետաքրքիր են դարձնում կուլտուրայի
տան կից գործող գեղարվեստական ինքնա-
գործ խմբակների սիստեմատիկ ելույթնե-
րը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի
լավ կազմակերպման օրինակներ ռեսպուբ-
լիկայում շատ կան։ Պարտիական կազմա-
կերպություններին կից ագիտկոլեկտիվները,
օգտագործելով և կատարելագործելով քա-
ղաքական աշխատանքի փորձը, աշխատա-
վորների շրջանում անց են կացնում կյան-
քի հետ սերտորեն կապված ագիտացիա, ո-
րը նպաստում է աշխատավորների լայն
մասսաների կոմունիստական դաստիարա-
կության գործին, մոբիլիզացնում նրանց ու-
ժերը արտադրական առաջադրանքները
ժամկետից շուտ կատարելու համար։

Ագիտատորների, կուլտուր-լուսավորական
հիմնարկների աշխատողների խնդիրն է
իրենց ամենօրյա աշխատանքով ապահովել
ՍՄԿԿ XXI համագումարում ընկեր Ն. Ս.

Խրուշչովի տված զեկուցման, համագումարի որոշումների ու նյութերի հետագա խոր ու բազմակողմանի պարզաբանումը։ Քաղաքական-մասսայական այդ աշխատանքը պետք է ուղղված լինի ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորների ջանքերի մոբիլիզացմանը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի խնդիրների հաջող կատարման ու գերակատարման համար։ Մեր ագիտատորները և կուլտուր-լուսավորական ֆրոնտի աշխատողները պետք է հիշեն, որ ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների պարզաբանումը ոչ թե կարճատև կամպանիա է, այլ երկարատև ժամանակաշրջանի հիմնական խնդիր։ Նրանք պետք է ձգտեն, որպեսզի քաղաքական, կուլտուր-մասսայական աշխատանքը մշտապես հարստացվի ինչպես ձևերի ու մեթոդների բազմազանությամբ, այնպես էլ նրա գաղափարական մակարդակի բարձրացմամբ։ Այդ աշխատանքը պետք է դառնա ավելի կոնկրետ, ներգործուն ու նպատակասլաց։

Անհրաժեշտ է, որպեսզի աշխատավորների շրջանում անցկացվող քաղաքական ագիտացիան սերտորեն շաղկապված լինի ռեսպուբլիկայի յուրաքանչյուր ձեռնարկու-



թյան, կոլտնտեսության, սովխոզի, յուրաքանչյուր շրջանի և քաղաքի տնտեսական ու կուլտուրական խնդիրների հետ։

Ագիտատորներն իրենց զրույցները կազմակերպելիս, պետք է հանդես բերեն դիֆերենցված մոտեցում, նրանք պետք է ուշադրության առնեն արդյունաբերության և գյուղատնտեսության տարբեր ճյուղերի աշխատողների պահանջները, ազգային, տարիքային կազմը և բնակչության խմբերի մյուս առանձնահատկությունները։ Պետք է հասնել այն բանին, որպեսզի քաղաքական-մասսայական աշխատանքը ընդգրկի բնակչության բոլոր խավերին, ինչպես նաև տնային տնտեսուհիներին, գիշերային հերթափոխությունների աշխատողներին։

Ռեսպուբլիկայի ագիտատորների, ագիտկետերի և կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողների խնդիրն է՝ աշխատավոր մասսաների շրջանում տարվող քաղաքական, կուլտուր-մասսայական ամբողջ աշխատանքը բարձրացնել տնտեսական ու կուլտուրական շինարարության նոր խնդիրների մակարդակին, այն ամբողջովին ի սպաս դնել աշխատավորներին լայնորեն ներգրավելու պարտիայի XXI համագումարի տնտեսական ու կուլտուրական մեծ կանխագծումների հաջող իրականացման գործին։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՀԱՄԱՐ

ՍՏ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի գյուղբաժնի վարիչ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ձեռնարկած իմաստուն միջոցառումների շնորհիվ մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսությունը վերջին տարիներում շեշտակի վերելք է ապրում։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում նշանակալից հաջողությունների են հասել նաև մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները։ Անցյալ գյուղատնտեսական տարում նախորդ տարվա համեմատությամբ Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններում ու սովխոզներում մսի արտադրությունը ավե-*



*լացավ 16,5 տոկոսով, կաթինը՝ 13,6 տոկոսով, բրդինը՝ 7,8 տոկոսով։*

*Միաժամանակ ավելացավ անասունների գլխաքանակը. խոշոր եղջերավոր անասուններինը՝ 4,2, այդ թվում կովերինը՝ 7,2, ոչխարներինը՝ 5, խոզերինը՝ 9,9 տոկոսով։*

*Մեկ տարվա ընթացքում բամբակի արտադրությունը աճեց 24,9 տոկոսով, ծխախոտինը՝ 11 տոկոսով։ 1958 թվականին պետությանը վաճառվեց 10.300 տոննայով ավելի խաղող, քան նախորդ տարում։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի շնորհիվ 1958 թվականին 24,3 տոկոսով ավելացան կոլտնտեսությունների դրամական եկամուտները։*

*Անցյալ տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ժամկետից շուտ կատարեցին և գերակատարեցին գյուղատնտեսական մթերքների վաճառքի պետական առաջադրանքները։*

*Բազմաթիվ կոլտնտեսություններ, սովխոզներ, առանձին շրջաններ անցյալ տարի հասան ավելի բարձր ցուցանիշների։*

*Արտաշատի շրջանի բամբակագործները բամբակենու պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցրեցին 29,1 ցենտների։ Բամբակի արտադրու-*

թյան ավելացման գործում լավագույն հա-
ջողությունների հասան Էջմիածնի շրջանի
կոլտնտեսությունները։ Այդ շրջանի Շահում-
յանի անվան կոլտնտեսությունը մեկ հեկ-
տարից ստացավ 49 ցենտներ բամբակ։ Ար-
տաշատի շրջանի Քաղցրաշենի կոլտնտեսու-
թյան՝ Մանուկ Վարդանյանի գլխավորած
բրիգադան մեկ հեկտարից ստացավ 60
ցենտներ բամբակ։

Սպիտակի շրջանի կոլտնտեսությունները
շաքարի ճակնդեղի պլանտացիաների յու-
րաքանչյուր հեկտարից ստացան 284 ցենտ-
ներ բերք։ Այդ շրջանի Մեծ Պարնիի կոլ-
տնտեսությունը 150 հեկտար ցանքատարա-
ծությունների ամեն մի հեկտարից հավա-
քեց 386 ցենտներ շաքարի ճակնդեղ։

Ծխախոտի ավելացման և բերքատվության
բարձրացման գործում աչքի ընկնող հաջո-
ղությունների հասան Շամշադինի շրջանի
կոլտնտեսությունները, որոնք ծխախոտի մի-
ջին բերքատվությունը հասցրեցին 19 ցենտ-
ների։ Այդ շրջանի Մովսես գյուղի կոլտնտե-
սության Հովսեփ Վանեսյանի բրիգադան
մեկ հեկտարից ստացավ 33,4 ցենտներ
ծխախոտ։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ա-
ռաջավորների պանծալի բանակը համալր-



վեց բազմաթիվ շնորհալի բամբակագործ-
ներով, ծխախոտագործներով, ճակնդեղա-
գործներով, այգեգործներով, բանջարա-
բուծներով, անասնապահներով, գյուղա-
տնտեսության այլ աշխատողներով։

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք
բերած հաջողությունների համար ՍՍՌՄ Գե-
րագույն Սովետի Նախագահությունը Հայ-
կական ՍՍՌ-ին պարգևատրեց Լենինի շքա-
նշանով։

ՍՄԿԿ XXI համագումարը մշակեց մեր
երկրի ժողովրդական տնտեսության զար-
գացման յոթնամյա պլանը։ Համագումարի
կողմից ընթացիկ ժամանակաշրջանը բնու-
թագրվեց արդեն կոմունիզմի ծավալուն կա-
ռուցման ժամանակաշրջան։ Յոթնամյա պլա-
նով նախատեսվում է ժողովրդական տըն-
տեսության բոլոր ճյուղերի աննախընթաց
վերելք, որը հնարավորություն կտա լուրջ
քայլ կատարելու կոմունիզմի նյութա-տեխ-
նիկական բազայի ստեղծման ուղղությամբ։

Մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսու-
թյան զարգացումը հիմնականում ընթանա-
լու է անասնաբուծության և այգեգործու-
թյան ուղղությամբ։

Հայաստանը հին խաղողագործական եր-
կիր է, սակայն մինչև սովետական կարգերի

հաստատումը Հայաստանի ներկա տերիտորիայում խաղողի այգիների տարածությունները չափազանց քիչ էին։ 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 9.200 հեկտար խաղողի այգի։ Դաշնակցականների տիրապետության ժամանակ խաղողի այգիների տարածությունը կրճատվեց մինչև 5.100 հեկտարի։

Յոթնամյա պլանով նախատեսված է ռեսպուբլիկայում տնկել 24.000 հեկտար խաղողի և 20.000 հեկտար պտղատու նոր այգիներ։ Եթե 1958 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրվել է 82,9 հազար տոննա խաղող, ապա 1965 թվականին պետք է արտադրվի 231 հազար տոննա, կամ 2,6 անգամ ավել։ Պտուղների արտադրությունը յոթնամյակի ընթացքում կավելանա 2,7 անգամ։

Յոթնամյակի ընթացքում խոշոր ուշադրություն է դարձվելու անասնաբուծության զարգացման հարցերին։ Պլանի համաձայն ռեսպուբլիկայում մսի արտադրությունը պետք է ավելանա 1,7 անգամ, կաթինը՝ 1,6 անգամ, բրդինը՝ 1,6 անգամ, ձվինը՝ 1,5 անգամ։ Հանրային անասնաբուծության աշխատողները իրենց առջև խնդիր են դրել



յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 1965 թվականին ունենալ 20 կով, իսկ կաթնապրանքային թեքում ունեցող տնտեսություններում՝ 25 կով։

Ինչպես երևում է բերված թվերից, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների առջև դրված են լուրջ և միաժամանակ շատ պատվավոր խնդիրներ, որոնց լուծումը հնարավոր է, միայն այն դեպքում, եթե առավելագույն չափով օգտագործվեն եղած ռեզերվներն ու հնարավորությունները, եթե դրանց կենսագործման համար պայքարի ելնեն բոլոր կոլտնտեսականներն ու սովխոզային աշխատողները։

Յոթնամյակի առաջին տարվա գարնանգյուղատնտեսական աշխատանքների նախօրյակին ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսություններում, սովխոզներում աշխատավորները մանրամասնորեն քննարկեցին իրենց անելիքները և որոշեցին սոցիալիստական մրցություն ծավալել 1959 թվականի առաջադրանքները հաջողությամբ կենսագործելու, յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

Գյուղատնտեսության առաջավորների ռեսպուբլիկական խորհրդակցությունը կոլտնտե-

սային և սովխոզային աշխատավորության անունից ընդունեց սոցիալիստական պարտավորություններ։ Այդ պարտավորությունների համաձայն 1965 թվականի առաջադրանքը պետք է կատարվի, բամբակի արտադրության գծով՝ ընթացիկ տարում, շաքարի ճակնդեղի արտադրության գծով՝ 1960 թվականին, ծխախոտի և բանջարեղենի գծով՝ 1961 թվականին, խաղողի գծով՝ 1964 թվականին։ Խաղողի այգիների տնկման յոթնամյա առաջադրանքը կատարվելու է 5 տարում, մսի և բրդի արտադրության յոթնամյա առաջադրանքը՝ 1963 թվականին, կաթինը և ձվինը՝ 1962 թվականին։

Սոցիալիստական պարտավորությունների համաձայն կոլտնտեսություններում և սովխոզներում ընթացիկ տարում մսի արտադրությունը պետք է ավելանա 30 տոկոսով, այդ թվում խոզի մսինը՝ 2 անգամ, կաթի արտադրությունը կոլտնտեսություններում՝ 25, իսկ սովխոզներում՝ 35 տոկոսով։ Մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը կոլտնտեսություններում պետք է կազմի 1550 կիլոգրամ, սովխոզներում՝ 2100 կիլոգրամ։ Ընթացիկ տարում կովերի գլխաքանակը պետք է ավելանա 15 տոկոսով, բրդի արտադրությունը 15 տոկոսով, ձվինը՝ 50 տո-



կոսով։ Եգիպտացորենի ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից պետք է ստացվի 250 ցենտներ միջին բերք։ Արտաշատի խաղողագործների կոչով պայքար է ծավալված խաղողի այգիների միջին բերքատվությունը 100 ցենտների հասցնելու համար։

Ոգևորված նախատեսվող առաջադրանքների վեհությամբ և պարտիայի ու կառավարության ամենօրյա հոգատարությամբ, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները ձեռնամուխ են եղել ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարմանը։

Վերջերս Հայաստանի կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը քննության առավ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի մասին հարցը։

Պլենումը արձանագրեց, որ ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները ղեկավարվելով ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներով մեծ խանդավառությամբ ձեռնամուխ են եղել ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա



պլանի առաջին տարվա առաջադրանքների
կատարմանը։
Ընթացիկ տարվա գարնան-գյուղատնտե-
սական աշխատանքները հիմնականում կա-
տարվել են սեղմ ժամկետում, ագրոտեխնի-
կայի պահանջներին համապատասխան և
բարձր որակով։
Ստեղծվել են լուրջ նախադրյալներ գյու-
ղատնտեսական կուլտուրաների բարձր բերք
ստանալու համար։ Ընթացիկ տարվա առա-
ջին 5 ամիսների ընթացքում նախորդ տար-
վա համեմատությամբ զգալիորեն ավելացել
է մսի և ձվի արտադրությունը։ Կոլտնտեսու-
թյուններում և սովխոզներում մսի արտա-
դրությունը ավելացել է 15 տոկոսով, ձվինը
27,8 տոկոսով։ Որոշ չափով ավելացել է
անասունների գլխաքանակը, այդ թվում
կովերի գլխաքանակը **մոտ 6** տոկոսով, խո-
զերինը՝ համարյա 10 տոկոսով, թռչուննե-
րինը՝ մոտ 60 տոկոսով։
Առանձին շրջաններ անասնաբուծական
մթերքների արտադրության ավելացման
համար ծավալված մրցությունում ձեռք են
բերել ավելի մեծ հաջողություններ։
Ընթացիկ տարում դաշտավարության մեջ
հատկանշական կողմն այն է, որ ավելի լայն
ծավալ է ընդունել եգիպտացորենի և բամ-



բակի քառակուսի-բնային ցանքի ու երկ-
կողմանի մշակության պրակտիկան։
Մեր ռեսպուբլիկայում մի շարք մեխա-
նիզատորներ հետևելով անվանի նորարարներ
Գիտալովի և Մանուկովսկու օրինակին, նա-
խաձեռնել են շարահերկ կուլտուրաների
ցանքի, մշակության ու բերքահավաքի
կոմպլեքսային մեքենայացման արմատա-
վորմանը։ Այդպիսի մեխանիզատորներից են
ընկերներ Խ. Խաչատրյանը և Ս. Գյուլնա-
զարյանը (Արտաշատի շրջանի Այգեստան
գյուղից), Ջ. Մուրթուզովը և Ի. Աքպարովը
(Վեդու շրջանի Շիրազլու գյուղից), Շ.
Բարսեղյանը և Ա. Վարդանյանը (Էջմիածնի
շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունից),
Վ. Նահապետյանը և Հ. Համբարձումյանը
(Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ
գյուղից) և ուրիշներ։ Այդ նորարարների
մշակած ցանքատարածությունները գտնվում
են լավ վիճակում, իսկ աշխատանքային
ծախսումները կրճատվել են մի քանի ան-
գամ։
Սակայն անհրաժեշտ է նշել, որ ոչ բոլոր
կոլտնտեսություններն ու սովխոզներն են
հաջողությամբ կատարում ստանձնած սո-
ցիալիստական պարտավորությունները։
Կենտրոնական Կոմիտեի պլենումը ռեսպուբ-

լիկայի գյուղական պարտիական կազմակերպությունների և կոլտնտեսային ու սովխոզային աշխատավորության ուշադրությունը հրավիրեց սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում գոյություն ունեցող թերությունները վերացնելու վրա։

Կարևորն այն է, որպեսզի պարտավորությունների կատարման համար պայքարեն բոլորը, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսական և սովխոզի բանվոր մշտապես հիշի իր ստանձնած պարտավորության մասին և ձգտի այն կատարել անթերի։

Այժմ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները ու սովխոզները թևակոխել են գյուղատնտեսական աշխատանքների վճռական փուլը։ Ուժեղ թափով ծավալվել է շարահերկ կուլտուրաների մշակությունը, ավարտվում են բերքահավաքի նախապատրաստական աշխատանքները, արդեն սկսվել են խոտհունձը և սիլոսացման աշխատանքները։ Այս ամիսներին վճռվում է նաև անասնաբուծության բնագավառում ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման բախտը։ Արոտային շրջանը ընթացիկ տարում ավելի բարենպաստ է, քան նախորդ տարում, անհրաժեշտ է առա-



վելագույն չափով օգտագործել այդ բանը և փակել կաթի և մսի արտադրության ավելացման վերաբերյալ ստանձնած պարտավորությունների կատարման գործում առաջացած ճեղքվածքը։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը մի շարք միջոցառումներ մշակեց, որոնց իրագործումը հնարավորություն կտա ապահովել պարտավորությունների կատարումը։

Կասկած լինել չի կարող այն բանում, որ Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները կրկնապատկված եռանդով կպայքարեն ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու, Ադրբեջան—Հայաստան սոցիալիստական մրցությունից պատվով դուրս գալու համար։

---

# ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

(Թվեր և փաստեր)

*Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ջանք չեն խնայում Սովետական Հայաստանի 40-ամյակը արտադրական նոր հաջողություններով նշանավորելու համար։ Նրանք ձգտում են բարձր ցուցանիշներով կատարել ստանձնած պարտավորությունները և երկրին տալ ավելի շատ արտադրանք։ Ահա այդ մասին թվեր և փաստեր։*

★ *Երևանի ձեռնարկությունները անցած 5 ամիսների համախառն արտադրանքի պլանը կատարել են 104,1 տոկոսով, երկրին տալով 76 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Պլանից դուրս արտադրված է մեծ քանակությամբ ավտոդողեր և մետաղահատ հաստոցներ, 34 կոմպրեսոր, մոտ 900 պոմպ, մեծ թվով էլեկտրական չափիչ գործիքներ, կոշկեղեն, գործվածքներ և այլն։*

★ *Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրոգործարանում վերջին ժամանակներս շահագործման են հանձնվել ավելի քան 2,5 կիլոմետր տարբեր կառուցվածքի*



*կոնվեյերներ, որոնց շնորհիվ մեխանիզացվել են արտադրության հիմնական պրոցեսները։ Կոնվեյերացված է մինչև 100 կիլովատ հզորություն ունեցող գեներատորների արտադրության ցիկլը՝ սկսած սկզբնական տեխնիկական պրոցեսից մինչև պատրաստի արտադրանքը պահեստ հանձնելը։*

★ *Այս տարվա սկզբում շահագործման է հանձնրված միասնական սերիայի գեներատորների հավաքման կոնվեյերը, որը հնարավորություն տվեց այդ տեղամասում հավաքման աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել մոտ 32 տոկոս և երկրին տալ ավելի քան 170.000 ռուբլու տնտեսում։*

★ *Արտադրության մեջ աշխատատար պրոցեսների մեքենայացման և կոնվեյերի ու հոսքային գծերի ներդրման, ինչպես նաև նոր ու ժամանակակից ավելի կատարելագործված էլեկտրասարքավորումներ օգտագործելու շնորհիվ գործարանը ժողովրդական տնտեսության միջոցներից տարեկան կտնտեսի ավելի քան 25 միլիոն ռուբլի։*

★ *Ավտոպահեստամասերի գործարանում աշխատանքի արտադրողականության բարձրացման համար լուրջ աշխատանք է կատարվում։ Միջոցառումներ են ձեռնարկվում արտադրության մեջ հոսքային գծերի կիրառման ուղղությամբ։*

*Արդեն շահագործման է հանձնվել և արտադրանք է տալիս ատամնավոր անիվ պատրաստող հոսքային նոր*

գիծը, որի շնորհիվ այդ դետալների արտադրությունը ավելանում է վեց անգամ։

★ Գործարանի դարբնոցային ցեխում շահագործման է հանձնվել կռածոներ պատրաստող հզոր մամլիչը, որի շնորհիվ այս տարի տնտեսվելու է մոտ 1 միլիոն ռուբլի։ № 2 մեխանիկական ցեխում շահագործման են հանձնվել մետաղների տեխնիկական մշակման ավելի կատարելագործված սարքավորումներ, որոնք զգալի չափով բարելավում են աշխատանքի պայմանները և թողարկվող արտադրանքի որակը։ Դետալների ջերմային մշակման այս նոր եղանակը հնարավորություն տվեց գործարանին մեկ տարվա ընթացքում մեկ միլիոն ռուբլու խնայողություն կատարել և միաժամանակ հրաժարվել մեծ քանակությամբ տարբեր վառելանյութեր ու այլ թանկարժեք նյութեր ստանալուց։

★ Ավտոպահեստամասերի գործարանում առանձնապես աչքի է ընկնում արտադրության պրոցեսի ավտոմատացումը ԶԻԼ—150 ավտոմեքենայի լիսեռային առնու մշակումը էլեկտրական բարձր հաճախականության միջոցով։ Եթե նախկինում այդ դետալի մշակման տեխնիկական պրոցեսը տևում էր 8—10 ժամ և նյութական մեծ ծախսումներ էր պահանջում, ապա այժմ մետաղների մշակումը կատարվում է ավտոմատիկ կերպով, ընդամենը մեկ րոպեի ընթացքում։ Անցած 4 ամիսների ընթացքում խնայված է 503,4 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։ Աշ-



խատանքի արտադրողականության պլանը գերակատարված է 0,1 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի նկատմամբ աճը կազմում է 13,6 տոկոս։

★ Երևանի Ջեթ-օճառ կոմբինատի կոլեկտիվը մրցանելով սոցիալիստական մրցության մեջ, մեծ հաջողությունների է հասել արտադրական բոլոր ցուցանիշների բարելավման ուղղությամբ։ Կոմբինատը անցած 5 ամիսների ընթացքում համախառն արտադրանքի պլանը կատարել է 103,5 տոկոսով և երկրին տվել է 3 միլիոն 191 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Մեկ բանվորի աշխատանքի արտադրողականության բարձրացումը պլանով նախատեսվածից գերազանցել է 5,5 տոկոս, իսկ մայիս ամսում այն բարձրացվեց 15,6 տոկոսով։

★ Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը անցած 5 ամիսների ընթացքում ձեռք է բերել նշանակալից հաջողություններ։ Պետական պլանները կատարելուց հետո, գործարանը համախառն արտադրանքի գծով երկրին տվել է մի քանի միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք։

★ Փոքր հիդրոտուրբինների գործարանը գերակատարել է այս տարվա 5 ամսվա համախառն արտադրանքի պլանը 116,4 տոկոսով և երկրին պլանից դուրս տվել է 1 միլիոն 600 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Արտադրանքի ինքնարժեքի իջեցումից տնտեսվել է 231 հազար ռուբլի և կատարվել ար-

տապլանային կուտակում 380 հազար ռուբլու չափով։ Գործարանում հունիս ամսվա ընթացքում թողարկվելու է փորձնական մեկ բլոկանի պոմպ և պայքար է տարվում նոր արտադրանքների ժամանակին և անթերի կատարման համար։

★ Երևանի Կոմպրեսորների գործարանի կոլեկտիվը անցած 5 ամիսների համախառն արտադրանքի պլանը կատարել է 116 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել մեծ քանակությամբ կոմպրեսորներ։ Գործարանում հուլիս ամսից կազմակերպվում է նոր տիպի կոմպրեսորների սերիական արտադրությունը։ Պլանից դուրս արտադրվելու է նաև 3.000 հատ գազային բալոն։

★ Նշանակալից հաջողությունների է հասել Շինարարական № 11 տրեստի կոլեկտիվը։ Պլանով նախատեսված 9.100 քմ. բնակելի տարածության փոխարեն, անցած 5 ամիսների ընթացքում շահագործման է հանձնվել 9.300 քմ.։ Նրանք հետևելով Մոսկվայի, Լենինգրադի, Սվերդլովսկու և երկրի առաջավոր մյուս շինարարական կազմակերպություններին ընթացիկ տարում պարտավորվել են կատարելու 60 միլիոն 600 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք։ Մինչև տարվա վերջը շահագործման են հանձնելու 31.443 քառակուսի մետր բնակելի տարածություն։ Շինարարները խոստացել են աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 4,8 տոկոսով, շինարարության ինքնարժեքը իջեցնել 8,5 տոկոսով։



Այս տարվա առաջին կիսամյակում պլանով նախատեսված 16.170 քառակուսի մետրի փոխարեն շահագործման է հանձնվելու 17.000 քմ. բնակելի տարածություն։

★ Երևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները պարտավորվել են արտադրական պլանը կատարել դեկտեմբերի 17-ին և երկրին տալ ավելի քան 170 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Նախատեսված համախառն արտադրանքի աճը 1958 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ հասցնել 11 տոկոսի։

★ Այս տարի Երևանի ձեռնարկություններում իրացվելու է արտադրանքի ավելի քան 80 նոր տեսակ։ Օրինակ, ֆրեզերային հաստոցներ, մետաղահատ դազգահներ, կոմպրեսորներ, տրանսֆորմատորային ենթակայաններ, դիզել-կոմպրեսորներ, կիսաավտոմատ էլեկտրակայաններ, [redacted] էլեկտրաչափիչ գործիքներ և սարքեր, պոմպեր, ժամացույցներ, գործվածքեղեն և այլն։

★ Աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը գերակատարվելու է 1,5 տոկոսով։

★ Մեծ հաջողություններ է ձեռք բերվելու շինարարության բնագավառում։ Ընթացիկ տարում կապիտալ ներդրումները կազմելու են 160 միլիոն ռուբլի, շահագործման են հանձնվելու մի շարք նոր արդյունաբերական ձեռնարկություններ, արտադրական նոր ցեխեր, Երկաթ-բետոնե կոնստրուկցիաների,

մամլման եղանակով խոշոր պանելների, ասֆալտ-բետոնի և № 5 հացի գործարանները, ձեռնոցների ֆաբրիկան, ատաղձագործական իրերի կոմբինատը և այլն։

★ Երևանում այս տարի կառուցվելու և շահագործման են հանձնվելու նոր ցեխեր, կորպուսներ և տեղամասեր։ Կառուցվել է մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի գլխավոր կորպուսը, Կանազի էլեկտրաձուլման ցեխը, ֆրեզերային հաստոցների գործարանի նոր կորպուսը, Պոլիվինիլացետատ գործարանի նոր ցեխը։ Վ. Ի. Լենինի անվան «Հայէլեկտրո» գործարանի հավաքման կորպուսը, Կարամելամակարոնի ֆաբրիկայի բիսկվիտի ցեխը, Մսի կոմբինատի մսի և ճարպի կորպուսը և այլն։

Շահագործման է հանձնվելու 182 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

---



# ԿՈՒՏԱԿԵՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ՍԻԼՈՍ

Ա. ԴԱՎԹՅԱՆ
Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության գլխավոր գյուղատնտես

Սիլոսը բարձրարժեք հյութալի կեր է։ Նրանով կարելի է կերակրել գյուղատնտեսական բոլոր տեսակի կենդանիներին և այն էլ տարվա բոլոր եղանակներին։

Գարնան և աշնան ամիսներին, երբ արոտը անասուններին չի բավարարում, սիլոսով կերակրելու միջոցով հնարավոր է կանխել անասունների մթերատվության անկումը։ Սիլոսը գրեթե լրիվ չափով իր մեջ պահպանում է թարմ կանաչի սննդային արժեքը։ Լավորակ սիլոսը լինում է վիտամիններով հարուստ։

Մատղաշ անասունների նորմալ աճի համար, սիլոսով նրանց կերակրելը ունի առանձնահատուկ նշանակություն։ Այդ պատճառով մատղաշների կերաբաժնի մեջ անպայման պետք է մտցնել սիլոս։

Կերերի սիլոսացման շնորհիվ, կանաչ կամ չոր վիճակում անասունների կողմից չօգտագործվող կամ վատ օգտագործվող բույսերը սիլոսացման միջոցով դառնում են օգտագործելի։

Սիլոսացման համար օգտագործում են՝ եգիպտացորենի, արևածաղկի, տարեկանի և զանազան խոտերի կանաչ մասսան, գետնախնձորի, բանջարա-բոստանային կուլտուրաների մնացորդները, ճակնդեղի և կարտոֆիլի փրերը, ինչպես նաև վայրի բուսականության շատ ու շատ տեսակների կանաչ մասսան։ Սիլոսացված կերը տնտեսություններում առանց փչանալու կարելի է պահել մի քանի տարի։

Բոլոր տեսակի բույսերը իրենց սիլոսացման աստիճանով բաժանվում են երեք խմբի՝ հեշտությամբ սիլոսացվող, դժվարությամբ սիլոսացվող և չսիլոսացվող։ Դյուրին սիլոսացվող բույսերից են եգիպտացորենը, արևածաղիկը, սորգոն, գետնախնձորը, ձմերուկը, դդումը, արմատապտուղների, կաղամբի տերևները և բազմաթիվ վայրի բույսեր, որոնք մեծ քանակի շաքարանյութ են պարունակում։

Դժվար են սիլոսացվում կարտոֆիլի ու պոմիդորի ցողունները և փրերը, երեքնու-



կը, վիկը, եղեգը և այլն։ Այս խմբի բույսերի որոշ մասն առանձին վերցրած բոլորովին չեն սիլոսացվում։ Օրինակ, առվույտը, կորնգանը, բոստանային կուլտուրաների ցողունները և տերևները, եղինջը, ծառի տերևները և մյուսները։ Դժվար սիլոսացվող և բոլորովին չսիլոսացվող բույսերից սիլոս պատրաստելու ժամանակ հարկավոր է նրանց հետ սիլոսացնել դյուրին սիլոսացվող բույսեր։ Այս դեպքում երեք, չորս մաս դյուրին սիլոսացվող բույսերի հետ խառնում են երկու մաս դժվար կամ չսիլոսացվող բույսերի մասսա։

Այս տարի տեղացող անձրևների հետևանքով փարթամ բուսականություն է աճել։ Ուստի ամենուրեք հնարավոր է կուտակել մեծ քանակությամբ սիլոս, մսուրային շրջանում անասուններին լրիվ չափով կերակրելու նպատակով։

Անհրաժեշտ է ձեռնամուխ լինել և առաջիկա մի քանի օրում ավարտել տնտեսություններում եղած բոլոր տեսակի սիլոսային կառուցվածքների մաքրման, վերանորոգման և ախտահանման աշխատանքները։ Յուրաքանչյուր կովի համար ընթացիկ տարում պետք է կուտակել 6—8 տոննա սիլոս։

Կարևոր նշանակություն ունի սիլոսացվող

*բույսերի հնձի ժամկետները։ Լավորակ սիլոս ունենալու գործում մեծ դեր են խաղում սիլոսային կառուցվածքները, որոնք լինում են վերերկրյա աշտարակներ, կիսաաշտարակներ, ստորերկրյա կլոր ու քառանկյունի հորեր և խրամատներ։*

*Բոլոր տեսակի սիլոսային կառուցվածքները պետք է կառուցել չոր, և անասնապահական ֆերմաների շենքերին մոտ վայրերում։ Տիպային կառուցվածքների՝ աշտարակների, կիսաաշտարակների և խրամատների մեջ սիլոսը լավ է պահպանվում։ Աշտարակների և կիսաաշտարակների տարողությունը կարող է լինել 75—250 տոննայի սահմաններում։ Հորերը և խրամատները տարբեր չափերի են լինում, խորությունը 2 մետրից ոչ պակաս, իսկ տրամագիծը կլոր (գլանաձև) հորի համար 3 մետրից ոչ ավելի, խրամատի լայնությունը հողի մակերեսի մասում լինում է 4 մետր, իսկ հատակի մասում ավելի նեղ, 3 մետր դեպի ներս, թեք պատերով։ Այսպիսի խրամատի երկարությունը կարող է լինել 10—25 մետր։*

*Սիլոսային բոլոր տեսակի կառուցվածքների պատերը պետք է լինեն օդի և ջրի համար անթափանցելի, որովհետև վերջին-*



*ների ազդեցությունից սիլոսը շատ արագ փչանում է։*

*Կերերի սիլոսացման աշխատանքները ժամանակին կատարելու գործում կարևոր նշանակություն ունի աշխատավոր ձեռքերի ճիշտ տեղաբաշխումը սիլոսային մասսան հնձելու, փոխադրելու, սիլոսահատ մեքենային սպասարկելու և սիլոսանյութը կառուցվածքի մեջ ամրացնելու-մամլելու համար։ Անհրաժեշտ է նույն օրվա հնձած կանաչ մասսան նույն օրը մանրացնել և սիլոսային կառուցվածքներում լցնել։ Երբ սիլոսային բույսերը հնձվում են ժամանակին, սիլոսը լինում է թե քանակով շատ, թե որակով բարձր և սննդանյութերով հարուստ։*

*Արևածաղիկը, գետնախնձորը հարկավոր է հնձել նրանց ծաղկման շրջանում, իսկ եգիպտացորենը, սորգոն, սուդանի խոտը՝ կաթնային հասունացման վերջում, մոմային հասունացման ժամանակ։*

*Արմատապտուղների, բոստանային և բանջարանոցային կուլտուրաների փրերը և ցողունները սիլոսացվում են նրանց բերքահավաքին զուգընթաց, կանաչ վիճակում։*

*Եղեգը, մյուս տեսակի դաշտամոլախոտերը անհրաժեշտ է հնձել, մինչև նրանց հուրան արձակելը և ծաղկելը։ Սիլոսային*

մասսան մանրացնել 2—4 սանտիմետր մեծության։

Սիլոսային մասսայի մանրացումը անպայման կատարել սիլոսահատ մեքենայով, որը աշխատում է տրակտորի կամ էլեկտրական շարժիչի օգնությամբ։ Այդ դեպքում յուրաքանչյուր կառուցվածքի լցնումը կավարտվի 2—3 օրում։

Կառուցվածքի մեջ սիլոսի մասսայի լցնումը ավարտելուց հետո, անհրաժեշտ է վերևի շերտը կառուցվածքի եզրերից զգալի չափով կոնաձև բարձրացնել, որովհետև մասսան հետագայում իջնում է։

Սիլոսի մասսան կառուցվածքի մեջ մամլելիս առանձնապես պետք է ուշադրություն դարձնել կառուցվածքի պատերի մոտ մամլելու վրա և սիլոսային կառուցվածքների մեջ կանաչ մասսայի լցնումը ավարտելուց հետո խնամքով երեսը ծածկել։

Սիլոսը սովորաբար պատրաստ է լինում 30—50 օր հետո։ Լավ պատրաստված սիլոսը ունենում է դուրեկան հոտ և միաժամանակ նրանից սպիրտի թույլ բուրմունք է գալիս։ Որակյալ սիլոսը զգալի չափով ավելացնում է կովերի կաթնատվությունը և մսուրային շրջանում նա փոխարինում է կանաչ խոտի։

---



# ԵԹՈՎՊԻԱ

## (Եթովպիայի և էրիտրեայի ֆեդերացիան)

### ՏԵՂԵԿԱՆՔ

Եթովպիա պետությունը գտնվում է Աֆրիկայի հյուսիս-արևելյան մասում։ Նա իր մեջ ընդգրկում է բուն Եթովպիան և իտալական նախկին գաղութ Էրիտրեան, որը 1952 թվականից ավտոնոմ իրավունքով միավորվել է Եթովպիա-Էրիտրեական ֆեդերացիայի մեջ։

Եթովպիան լեռնային երկիր է։ Նրա տերիտորիայի մեծ մասը գրավում է Հաբեշական բարձրավանդակը, որի միջին բարձրությունը ծովի մակերևույթից 1.800—2.000 մետր է։ Հյուսիսում, դեպի Կարմիր ծովը, երկիրն ունի ընդարձակ ելք, որի ափերում տեղադրված են Եթովպիայի Մասսաուա և Ասսաբ նավահանգիստները։ Եթովպիայի հարավային մասում սկիզբ է առնում կապույտ Նեղոսը, Նեղոսի մեծ վտակը, որը իր ջրերով հորդառատ է դարձնում աֆրիկական

մասսան մանրացնել 2—4 սանտիմետր մեծության։

Սիլոսային մասսայի մանրացումը անպայման կատարել սիլոսահատ մեքենայով, որը աշխատում է տրակտորի կամ էլեկտրական շարժիչի օգնությամբ։ Այդ դեպքում յուրաքանչյուր կառուցվածքի լցնումը կավարտվի 2—3 օրում։

Կառուցվածքի մեջ սիլոսի մասսայի լցնումը ավարտելուց հետո, անհրաժեշտ է վերևի շերտը կառուցվածքի եզրերից զգալի չափով կոնաձև բարձրացնել, որովհետև մասսան հետագայում իջնում է։

Սիլոսի մասսան կառուցվածքի մեջ ճմլելիս առանձնապես պետք է ուշադրություն դարձնել կառուցվածքի պատերի մոտ ճմլելու վրա և սիլոսային կառուցվածքների մեջ կանաչ մասսայի լցնումը ավարտելուց հետո խնամքով երեսը ծածկել։

Սիլոսը սովորաբար պատրաստ է լինում 30—50 օր հետո։ Լավ պատրաստված սիլոսը ունենում է դուրեկան հոտ և միաժամանակ նրանից սպիրտի թույլ բուրմունք է գալիս։ Որակյալ սիլոսը զգալի չափով ավելացնում է կովերի կաթնատվությունը և ձմեռային շրջանում նա փոխարինում է կանաչ խոտի։

---



# ԵԹՈՎՊԻԱ

## (Եթովպիայի և Էրիտրեայի ֆեդերացիան)

### ՏԵՂԵԿԱՆՔ

Եթովպիա պետությունը գտնվում է Աֆրիկայի հյուսիս-արևելյան մասում։ Նա իր մեջ ընդգրկում է բուն Եթովպիան և իտալական նախկին գաղութ Էրիտրեան, որը 1952 թվականից ավտոնոմ իրավունքով միավորվել է Եթովպիա-Էրիտրեական ֆեդերացիայի մեջ։

Եթովպիան լեռնային երկիր է։ Նրա տերիտորիայի մեծ մասը գրավում է Հաբեշական բարձրավանդակը, որի միջին բարձրությունը ծովի մակերևույթից 1.800—2.000 մետր է։ Հյուսիսում, դեպի Կարմիր ծովը, երկիրն ունի ընդարձակ ելք, որի ափերում տեղադրված են Եթովպիայի Մասսաուա և Ասսաբ նավահանգիստները։ Եթովպիայի հարավային մասում սկիզբ է առնում կապույտ Նեղոսը, Նեղոսի մեծ վտակը, որը իր ջրերով հորդառատ է դարձնում աֆրիկական

այդ մեծ գետը, որը կենսական նշանակություն ունի Եգիպտոսի և Սուդանի ժողովուրդների համար։

Եթովպիան արևմուտքից սահմանակից է Սուդանի ռեսպուբլիկային, արևելքից ֆրանսիական և բրիտանական Սոմալիին, հարավ-արևելքից Իտալիայի խնամակալության տակ գտնվող Սոմալիին, հարավից անգլիական գաղութ Կենիային։ Իր տերիտորիայով (1.184 հազար քառակուսի կիլոմետր) Եթովպիան մեծ է Անգլիայից, Ֆրանսիայից և Իտալիայից միասին վերցրած։

Եթովպիա-Էրիտրեական ֆեդերացիայի բնակչությունը մոտ 20 միլիոն մարդ է, որից 1 միլիոն 100 հազարը բնակվում է Էրիտրեայում։ Բնակչության մոտ մեկ երրորդը ախար ժողովուրդն է, որի լեզուն համարվում է Եթովպիայի պետական լեզուն։ Մյուս խոշոր ազգություններից ու ցեղերից են գալլաները, դանակիլները, սոմալիները, տիգրերը, տիգրաինները, սիդամաները։

Եթովպիայի մայրաքաղաքն է Ադդիս-Աբեբան՝ (400 հազար բնակիչ)։ Մյուս խոշոր քաղաքներն են՝ Էրիտրեայի վարչական կենտրոն Ասմարան (120 հազար բնակիչ), Դեսսիեն, Խարարը, Դիրեդավան։

Եթովպիան տնտեսապես թույլ երկիր է։ Նրա



բնակչության մոտ 95 տոկոսը զբաղված է գյուղատնտեսությամբ։ Գլխավոր մթերային կուլտուրաներն են՝ տեֆֆը (հացահատիկային բույս), ցորենը, սորգոն, եգիպտացորենը, գարին, սիսեռը, ոսպը, բակլան, գետնանուշը։ Տեխնիկական կուլտուրաներից աճում է՝ շաքարեղեգ, բամբակ, ծխախոտ։ Բավականաչափ արտադրվում է սուրճ, որը Եթովպիական արտահանության հիմնական հոդվածն է։ Բնական ընդարձակ արոտավայրերի և մարգագետինների բազայի վրա զարգանում է անասնաբուծությունը։ Էրիտրեայի և Դախլակ կղզու ծովափնյա շրջանում բնակչությունը զբաղվում է ձկնորսությամբ և ադամանդի հանույթով։

Եթովպիայի հողի մեծ մասը պատկանում է կայսրին, կալվածատերերին և եկեղեցուն։ Գյուղացության մեծ մասը հողազուրկ է և ստիպված է այն վարձակալել կալվածատերերից, հողի դիմաց նրան աշխատանքով հատուցել կամ որոշակի քանակությամբ բերք տալ։

Վերջին տարիներին եթովպիական կառավարությունը հրատարակել է մի շարք հրամաններ, որոնցով քայքայվում է կալվածատիրական հողատիրության հիմքերը և

ստեղծվում է բարենպաստ պայմաններ գյուղում կապիտալիստական հարաբերություններ զարգացնելու համար։ Երկրում զարգանում է ֆերմերական տնտեսությունը, որը հենված է բատրակների վարձու աշխատանքի վրա։ Գյուղատնտեսական արտադրության տեխնիկան գտնվում է հետամնաց վիճակում։ Հողի մշակության համար սովորաբար կիրառվում է հասարակ փայտե գործիքներ և ձեռքի աշխատանք։

Եթովպիայի ընդերքը հարուստ է բազմաթիվ օգտակար հանածոներով։ Երկրում կա երկաթի հանքեր, քարածուխ, նավթ, մարգանեց, պղինձ, ցինկ, արճիճ, վոլֆրամ, ուրան, ծծումբ, փայլար և ուրիշ հանքային նյութեր։ Բայց այդ հանքային հարստությունները լրիվ չեն օգտագործվում։ Մինչև այժմ արդյունահանվում է միայն ոսկի, պլատին և կերակրի աղ։ Շատ թույլ է զարգացած վերամշակվող արդյունաբերությունը։ Ըստ 1957 թվականի տվյալների, երկրում եղել է 132 ձեռնարկություն, որոնք մեծ մասամբ վերամշակում են գյուղատնտեսական արտադրանքը՝ (բամբակե գործվածքներ, կաշի, ձեթ, ալյուր, շաքար, սղոցված փայտ և այլն)։ Արդյունաբերության և տրանսպորտի նշանակլից մասը պատկանում է օտար-



երկրյա ընկերություններին (ամերիկյան, հոլանդական, ֆրանսիական, իտալական և և ուրիշներ)։ Վերջին ժամանակներս Եթովպիայում ամերիկյան կապիտալի հետ միասին թափանցում է արևմտա-գերմանական կապիտալը։ Եթովպիայի արդյունաբերության մեջ աշխատում են 19 հազար բանվոր։ Բանվորական օրենսդրություն երկրում գոյություն չունի, պրոֆմիությունները գործում են կիսալեգալ պայմաններում։ Եթովպիայում իսկական քաղաքական պարտիաներ գոյություն չունեն։ Էրիտրեայում կան մի շարք քաղաքական կազմակերպություններ, որոնք արտահայտում են կառավարող դասակարգերի, տարբեր խավերի շահերը։

Ըստ 1955 թվականի կոնստիտուցիայի Եթովպիայի և Էրիտրեայի ֆեդերացիան համարվում է կոնստիտուցիոն միապետական, պետության գլուխը միապետն է («Նեգուս Նեգեստ»)։ Համաձայն կոնստիտուցիայի միապետը մեծ իրավունքներ ունի։ Նա հաճախակի նշանակում և փոփոխում է պրեմյեր-մինիստրներ և կառավարության անդամներ, իրականացնում է միապետության արտաքին հարաբերություններում գերագույն ղեկավարություն, Եթովպիայի անունից վավերացնում է միջազգային պայմա-

նագրերն ու համաձայնագրերը: Միապետը հանդիսանում է Եթովպիայի զինված ուժերի գերագույն գլխավոր հրամանատարը: Նա ունի պառլամենտում ընդունված օրենքների վետոի իրավունք և պառլամենտը ցրելու իրավունք: Միապետը գլխավորում է Եթովպիայի քրիստոնեական կոպտական եկեղեցին, որը ուժեղ ազդեցություն ունի երկրի ամբողջ կյանքի վրա: 1930 թվականից Եթովպիայի միապետն է Հայլե Սելասսիե առաջինը:

Եթովպիայում օրենսդիր իշխանությունը իրականացնում է պառլամենտը, որը բաղկացած է երկու պալատից՝ սենատից և դեպուտատների պալատից: Դեպուտատների պալատը ընտրվում է 4 տարով, ուղղակի ընտրությունների միջոցով, գաղտնի քվեարկությամբ: Ընտրական իրավունքը սահմանափակված է նստակեցության և գույքային ցենզերով: Սենատը չի ընտրվում, այլ նշանակվում է միապետի կողմից տոհմիկ կամ պետական բարձր պաշտոնատար անձանցից:

Երկրում գործադիր իշխանությունը պատկանում է միապետին և նրա առաջ պատասխանատու կառավարությանը:

Եթովպիան իր արտաքին քաղաքականու-



թյունը անցկացնում է տարբեր հասարակական-քաղաքական սիստեմներ ունեցող պետությունների հետ խաղաղ համագործակցության սկզբունքով: Միապետ Հայլե Սելասսիեն մի շարք անգամ ելույթ է ունեցել հայտարարելով, որ պաշտպանում է իրենց ազգային անկախությունը պաշտպանող Աֆրիկյան երկրներին:

Հետպատերազմյան տարիներին Եթովպիան մի շարք քաղաքական և տնտեսական համաձայնագրեր է կնքել Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ: 1953 թվականին ԱՄՆ-ը Եթովպիային պարտադրեց այսպես կոչված փոխադարձ պաշտպանության պայմանագիրը: 1954 թվականի մայիսին Հայլե Սելասսիեն ԱՄՆ-ի կառավարության հետ կնքեց 99 տարվա ժամկետով համաձայնագիր, ըստ որի Միացյալ Նահանգներն իրավունք են ստանում Եթովպիայում օգտագործել ռազմական բազաներ: Եթովպիական զինված ուժերին կից գտնվում են ամերիկյան զինվորական խորհրդատուներ: 1957 թվականին Եթովպիան միացավ «էյզենհաուերի դոկտրինային»:

Սովետական Միության և Եթովպիայի ժողովուրդների միջև վաղուց գոյություն ունեն բարեկամական հարաբերություններ: ՍՍՌՄ-ը

վճռականորեն պաշտպանեց Եթովպիայի ժողովրդի պայքարը Եթովպիայի դեմ ուղղված իտալական ֆաշիզմի ագրեսիայի ժամանակաշրջանում (1935—1936 թվականներ) և Իտալիայի կողմից այդ երկրի օկուպացիայի ժամանակաշրջանում (1936—1941 թվականներ)։

Եթովպիայի սուվերենության և անկախության վերականգնումից հետո նրա կառավարության հետ Սովետական կառավարությունը դիպլոմատիկական հարաբերություններ սահմանեց։ Երկու երկրների միջև զարգանում է առևտրական և կուլտուրական կապերը։ Եթովպիայի կառավարության խնդրանքով ՍՍՌՄ Կարմիր խաչի և Կարմիր Կիսալուսնի Միությունը Ադդիս-Աբեբայում հոսպիտալ սարքավորեց, որտեղ սովետական բժիշկները տեղական բնակչությանը ցույց են տալիս բժշկական օգնություն։ Եթովպիայի մայրաքաղաքում ցուցադրվում են սովետական ֆիլմեր, որոնք հանդիսատեսների կողմից ժողովրդականություն են վայելում։ Քաղաքում կան սովետական հանրային գրադարան-ընթերցարան և մշտական գործող սովետական ցուցահանդես, որը ցույց է տալիս ՍՍՌՄ տնտեսական և կուլտուրական հաջողությունները։

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՀԱՂԹԱՆԱԿՈՎ ԴՈՒՐՍ ԳԱՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԻՑ*

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչպես կազմակերպել մրցությունը, *Երկեր, հատոր 26, էջ 493—503, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մրցության կազմակերպումը, *Երկեր, հատոր 27, էջ 310—315, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Յոթնամյա պլանը և ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի կատարումը, *ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարին տված զեկուցումից, էջ 82—89, Հայպետհրատ, 1959։*

Պատվով կատարենք սոցիալիստական պարտավորությունները, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի հունիսի 5-ի առաջնորդողը։*

Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններում և սովխոզներում սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի մասին, ՀԿՊ Կենտկոմի 4-րդ պլենումի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունիսի 2-ի համարում։*

## 2. ԱՆԸՆԴՀԱՏ ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի գլխավոր խնդիրները, *ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարին տված զեկուցումից, էջ 17—62, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— *Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացումը յոթնամյակում, ՀԿԿ XX համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Ոգևորիչ ցուցանիշներ, մեծ անելիքներ, *տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1959 թվականի 5-րդ համարում։*

## 3. ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 40-ԱՄՅԱԿԸ

(Օգտագործել տեղական նյութեր)

## 4. ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ՑԱՆՔԵՐԻ ԵՎ ԱՅԳԻՆԵՐԻ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման հարցերը, *ՍՄԿԿ XXI համագումարին տված զեկուցումից, էջ 38—45, Հայպետհրատ, 1959։*



Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Գյուղատնտեսության հետագա վերելքը, *ՀԿԿ XX համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Հանուն երկրագործության բարձր կուլտուրայի, հանուն առատ բերքի, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1959 թվականի 5-րդ համարի առաջնորդողը։*

## 5. ԽՈՏՀԱՐՈՒՆՔԸ ԵՎ ԿԵՐԵՐԻ ՍԻԼՈՍԱՑՈՒՄԸ

(Զրույցի համար օգտագործել տեղական փաստեր)

## 6. ԻՆՔՆԱՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիստական դաստիարակության հարցերը, ժողովրդական կրթությունը, գիտության և կուլտուրայի զարգացումը, *ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարին տված զեկուցումից, էջ 125—133, Հայպետհրատ, 1959։*

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեում և ՍՍՌՄ Մինիստրների Սովետում, *որոշում ուսումնական հաստատություններում ինքնասպասարկումն ընդլայնելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունիսի 6-ի համարում։*

Սովետական դպրոցի վերակառուցման նոր ուղին, *«Սովետական մանկավարժ» ամսագրի 1959 թվականի 5-րդ համարի առաջնորդողը։*

## 7. ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԵԽԱՆԵՐԸ ՇՐՋԱՊԱՏՎԱԾ ԵՆ ՋԵՐՄ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅԱՄԲ

Գրականություն

Մանկական նախադպրոցական հիմնարկների հետագա զարգացման, նախադպրոցական տարիքի երեխաների դաստիարակության ու բժշկական սպասարկման բարելավման միջոցառումների մասին, *ՍՄԿԳ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մայիսի 28-ի համարում։*

Հանուն խաղաղության, հանուն երեխաների երջանկության, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի մայիսի 31-ի առաջնորդողը։*

## 8. ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

## 9. ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

## 10. ԱՃՈՒՄ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

Գրականություն

Սովետական Միության և Ալբանիայի ժողովրդական ռեսպուբլիկայի պարտիական-կառավարական պատվիրակությունների համատեղ հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունիսի 2-ի համարում։*

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի պատասխանները հունգարական հեռագրական գործակալության և «Նեպսաբադշագ» թերթի խմբագրության հարցերին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունիսի 9-ի համարում։*

---



# Ս—100 ԵՎ Տ—140 ՏՐԱԿՏՈՐՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԸ

*Չելյաբինսկու տրակտորային գործարանի կոլեկտիվը խոշոր աշխատանք է կատարել Ս—80 տրակտորի շարժիչի հզորությունը բարձրացնելու ուղղությամբ։ Աշխատանքը հաջողությամբ է ավարտվել Ս—100 տրակտորի ստեղծման գործում։ Բրյանսկու ավտոմոբիլային գործարանում յուրացվել է Տ—140 տրակտորի արտադրությունը։*

**Ս—100 տրակտորը** *տարբերվում է Ս—80-ից շարժիչի հզորությամբ, օդամաքրման սիստեմով, քառաշար ռադիատորի կիրառումով, հովացման ուժեղությամբ և այլն։ Այս բոլոր կատարելագործումները նշանակալիորեն բարձրացնում են տրակտորի շահագործման հուսալիությունը, ավելացնում նրա արտադրողականությունն ու խնայողությունը։*

*Գյուղատնտեսական հիմնական աշխատանքներում փորձնական շահագործման տվյալները ցույց են տվել, որ Ս—100 տրակտորը տեխնիկական տեսակետից նշանակալից առավելություն ունի Ս—80 տրակտորի համեմատությամբ, ա[illegible]րողականությունը*



բարձրացնում է 20 տոկոսով, վառելիքի ծախսման խնայողություն է կատարվում 7—8 տոկոսով և կարտոֆիլային յուղի ծախսումը պակասում է 1,5—2 անգամ։

**Ս—100 Բ ճահճագնաց տրակտորը նախատեսված է** ջրաշինարարական կոմպլեքսային աշխատանքներ կատարելու համար։ Ճահճային և ճահճակալած հողերը յուրացնելու ժամանակ։ Համապատասխան գործիքների հետ միասին տրակտորի ագրեգատը կարող է օգտագործվել նաև չորացվող ճահիճները թփուտներից մաքրելու և խոր վար կատարելու համար։ Ս—100Բ տրակտորի նմուշները անցել են համապատասխան փորձարկումներով և հանձնարարված է փորձնական պարտիա պատրաստելու համար։

**Ս—100 ԳՊՍ** տրակտորը հիդրավլիկ սիստեմով նախատեսված է կախովի, կիսակախովի և կցիչ գործիքներ ունեցող ագրեգատում աշխատելու համար։ Տրակտորը ղեկավարվում է հիդրավլիկ մեխանիզմի օգնությամբ։ Ներկայումս կատարվում են նախնական փորձարկումները։

**Ս—100Լ տրակտորը ստեղծված է** Ս—100 սերիական տրակտորի բազայի վրա, փայտամթերման որոշակի կոմպլեքսային օպերացիա կատարելու համար։ Տրակտորը հագեցված է քարշափոխադրական կարապիկով, շրջադարձային լապտերներով և այլ հարմարանքներով։ Տրակտորի փորձնական աշխատանքները անցել են հաջողությամբ և հանձնարարված է սերիական արտադրության համար։



S—140 թրթուրային հզոր տրակտորը նախատեսված է կախովի և կցիչ գործիքներով ջրաշինարարության, արդյունաբերության մեջ և այլ կառույցներում աշխատելու համար։ Գյուղատնտեսության մեջ տրակտորը կարող է օգտագործվել պնդացած հողերը վարելու համար։ Ճահճագնաց թրթուրի տեղադրման դեպքում տրակտորը կարող է աշխատել ճահճային և գերխոնավ հողերում։

**S—140Լ և վերափոխված տրակտորը** նախատեսված է անտառարդյունաբերության մեջ աշխատելու համար, սարքավորված է քարշափոխադրական կռունկով և այլ հարմարանքներով։

---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

## СОДЕРЖАНИЕ



**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 12 1959 г.**

*ՎՖ 04536 Պատվեր 417 Տիրաժ 9156*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 50 կոպ.*